# CLASSICAL ARMENIAN BIBLE: THE ZOHRAB BIBLE

## Edited by Dr H. Zohrabian



## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ
### ՄԱՏԵԱՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ԸՍՏ
ՃՇԳՐԻՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ
ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ
'Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆՆ ՀԱՒԱՏԱՐՄԱԳՈՅՆ ԲՆԱԳՐԷ
'Ի ՀԱՅԿԱԿԱՆՍ ԲԱՐԲԱՌ։

*Նորոգապէս 'ի լոյս ընծայեալ*
*յընտրելագոյն գրչագիր գաղափարէ՝*
*Համեմատութեամբ այլևայլ օրինակաց,*
*Հանդերձ կարևոր ծանօթութեամբք բնաբանին։*

Յաշխատասիրութենէ տեառն
Հ. Յովհաննու Զօհրապեան Վարդապետի,
'ի միաբանութենէ Մեծին Մխիթարայ
Րաբունապետի և առաջին Աբբայի։



*Տպագրեալ Հրամանաւ Տ.Տ. Ստեփաննոսի Ագոնց*
*Աստուածապատիւ Արհիեպիսկոպոսի,*
*և Առաջնորդի Ուխտին՝ Սրբոյն Ղազարու։*

## THE BIBLE
### OLD AND NEW TESTAMENTS

ACCORDING
TO THE ACCURATE TRANSLATION
OF OUR ANCESTORS
FROM THE MOST RELIABLE GREEK TEXT
INTO THE ARMENIAN LANGUAGE.

Newly published from the best manuscript,
with a comparison of various exemplars,
with important annotations to the text.

*On the basis of the work of*
*Rev. Doctor Fr. Hovhann Zohrabian,*
*of the Congregation of the Great Mechitar,*
*Pontif and first Abbot.*

Published by order of the Very Rev. Stepannosi Agonts,
Honoured Venerable Bishop
and Prelate of the Congregation of St. Lazarus.

Revised edition edited by Tigran A. Aivazian (Erevan, 2016)





1805 'Ի ՎԵՆԷՏԻԿ. ՌՄԾԴ
'Ի Գործարանի Սրբոյն Ղազարու։

1805 VENICE
At the Press of St. Lazarus.

թէ պղնձի է. ահաւադիկ կենդանի՛ է, ուտէ՛ և ըմպէ. և
ո՛չ կարես ասել թէ չիցէ դա աստուած կենդանի. արդ ե՛կ
պագ դմա երկիր: 24 Եւ ասէ ցնա Դանիէլ. Ես՝ Տեառն Աս-
տուծոյ իմոյ երկիր պագանեմ, զի նա՛ է Աստուած կեն-
դանի: 25 Բայց դու ա՛րքայ՝ տո՛ւր իշխանութիւն, և սպանի՛ց
զվիշապդ առանց սրոյ և գաւազանի: Եւ ասէ
թագաւորն. Տուեա՛լ քեզ: 26 Եւ ա՛ռ Դանիէլ՝ եւղ, ձիւթ, և
ճարպ, և մազ. և եփեա՛ց 'ի միասին՝ և արար գնդակս, և
եհար 'ի բերան վիշապին. և իբրև կերաւ՝ պայթեաց վի-
շապն. և ասէ. Տեսէ՛ք զպաշտամո՛ւնսդ ձեր: 27 Եւ եղև իբրև
լուան Բաբելացիքն՝ բարկացա՛ն յոյժ, և կուտեցան 'ի վե-
րայ թագաւորին՝ և ասեն. Հրեա՛յ եղև թագաւորն. զԲէլ
կործանեա՛ց, և զվիշապն սպա՛ն, զքուրմսն կոտորեա՛ց: 28 Եւ
իբրև եկին, ասեն ցթագաւորն. Տո՛ւր մեզ 'ի ձեռս զԴանիէլ.
ապա թէ ո՛չ՝ սպանանե՛մք զքեզ և զտուն քո: 29 Եւ իբրև ե-
տես թագաւորն՝ եթէ կարի՛ տագնապեն զնա, Հարկաւ 'ի
ձե՛ռս ետ նոցա զԴանիէլ: 30 Եւ նոքա արկին զնա 'ի գուբն
առիւծուց. և անդ էր զվեց օր: 31 Եւ էին 'ի գբին եւթն
առեւծք. և տային նոցա Հանապազ երկո՛ւս մարդս, և եր-
կուս պատրուճակս. բայց յայնժամ ո՛չ ինչ արկին նոցա, զի
վաղվաղակի՛ կերիցեն զԴանիէլ: 32 Եւ էր Ամբակո՛ւմ մար-
գարէ 'ի Հրէաստանի. և եփեաց թան, և բրդեաց Հաց 'ի
կուր. և երթայր յանդ՝ տանել մշակաց իւրոց: 33 Եւ ասէ
Հրեշտակ Տեառն ցԱմբակում. Տա՛ր զճաշդ զոր ունիս՝ 'ի
Բաբելոն Դանիէլի՝ 'ի գուբն առիւծուց: 34 Եւ ասէ Ամբա-
կում. Տէ՛ր՝ զԲաբելոն՝ իմ չի՛ք տեսեալ, և զգուբն ո՛չ գիտեմ
ո՛ւր իցէ: 35 Եւ բուռն եհար Հրեշտակն զգագաթանէ նորա, և
կալաւ զվարսից գլխոյ նորա, և ե՛դ զնա 'ի Բաբելոն 'ի վե-
րայ գբոյն սաստկութեամբ Հոգւոյ իւրոյ: 36 Եւ աղաղակեաց
Ամբակում՝ և ասէ. Դանիէ՛լ Դանիէլ՝ առ՛ ա՛ռ զճաշդ զոր
առաքեաց քեզ Աստուած: 37 Եւ ասէ Դանիէլ. Յիշեցեր զիս
Աստուած, և ո՛չ ընդ վայր Հարեր զսիրելիս քո: 38 Եւ յարեաւ
Դանիէլ՝ և եկեր. և Հրեշտակ Աստուծոյ տարաւ զԱմբակում
նոյնժամայն անդրէն 'ի տեղի իւր: 39 Եւ թագաւորն եկն յա-
ւուրն եւթներորդի աշխարել զԴանիէլ. և իբրև եկն 'ի բե-
րան գբոյն, և Հայեցաւ, և ետես զի նստէր Դանիէլ. 40 ա-
ղաղակեա՛ց 'ի ձայն մեծ՝ և ասէ. Մե՛ծ ես Տէր Աստուած
Դանիէլի. և չի՛ք այլ ոք բա՛ց 'ի քէն: Եւ ա՛ռ զնա 'ի վեր:
41 Եւ զխասակարս կորստեան նորա արկին 'ի գուբն. և գէշ
գէշ պատառեցան նոյնժամայն առաջի նորա:

Կատարեցաւ Մարգարէութիւնն Դանիէլի:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ ԵԶԵԿԻԵԼԻ ՄԱՐԳԱՐԷԻ

Եզեկիէլ՝ Նաբուքոդոնոսորայ յերրորդ ելանելն յԵրուսաղէմ, գերի վարեցաւ ընդ Յովակիմայ արքայի, որ նա ինքն է Յեքոնիա՝ Հայր Սաղաթիելի. յորոյ Հինգերորդ ամի գերութեանն սկսաւ մարգարէանալ Եզեկիէլ 'ի Բաբելոն: Եւ է պատճառ սքանչելի տեսլեանն՝ զոր ետես, այսպէս: 'Ի գլուխ ամպարշտութեան Հասեալ Հրէիցն՝ բազումք գերեալ եղեն 'ի Բաբելոն, ընդ որս և արքայն Յեքոնիա. իսկ մնացեալքն անդէն ո՛չ զգաստանային, այլ վստահացեալք 'ի տաճարն որ չև էր Հրկիզեալ, ուր Համարէին բնակել զԱստուած. և անձնար կարծէին մատնել զնա Հեթանոսաց, որով ամբարտաւանեալք ևս 'ի չարիս յառաջէին: Եւ զի 'ի ժամանակի անդ՝ Երեմիաս 'ի միջի նոցա էր յԵրուսաղէմ. որ թէպէտ խրատէր և յանդիմանէր զնոսա՝ ո՛չ Հաւանէին. այլ ընդ Հակառակս ելեալ ատէին զնա, և իբրև ընդ թշնամի ինքեանց Հայելով ընդ նա, և ընդ բարեկամ Քաղդէացւոց, ո՛չ միայն չլսէին նմա, այլ և սպանանել ևս ջանային: Առնու Աստուած 'ի ձեռն մարգարէական շնորՀիւ զԵզեկիէլ 'ի Բաբելոն, ընդ որում ո՛չ գոյր Հրէիցն իրք նախանձու՝ որպէս ընդ Երեմիայի. և տա՛յ նմա Համաձայնել Երեմիայի 'ի կշտամբանս չարեաց Հրէիցն, և 'ի սպառնալիս կործանմանն քաղաքին և տաճարին՝ թէ ոչ դարձցին: Զի 'ի Հեռուստ 'ի Բաբելոնէ սպառնալով նորա, զոր 'ի ձեռն երթևեկաց ունէին լսել որք յԵրուսաղէմ, թերևս Հաւանեսցին անսալ՝ զի ապրեսցին: Արդ՝ ետես մարգարէս զտեսիլ փառացն Աստուծոյ 'ի վերայ քրովբէից, ընդդէմ կարծեացն Հրէից՝ թէ չէ՛ Աստուած կարօտ տաճարին, կամ քրովբէիցն որ անդ. զի յևս զարմանալի կենդանեաց պաշտի. և չխնայէ մատնել զտաճարն Հանդերձ անդարձ Հրէիւքն՝ Նաբուքոդոնոսորայ. զոր և կերպարանօք գազանացն դրոշմէ զնա: Զի թէպէտ մարդ է բնութեամբ՝ բուռն է իբրև զառեւծ, և սուր իբրև զարծուի, կասօղ և մանրօղ իբրև զզուարակ. զոր և ածելոց էր 'ի վերայ նոցա և տաճարին: Եւ զի կատարելոց էր զսպառնալիսս, ածէ տեսլեամբ զմարգարէս յԵրուսաղէմ և ցուցանէ նմա զծածուկ և զյայտնի չարիս նոցա, ընդ որոց յաճախէ սպառնալիս յիշմամբ երախտեացն՝ որ առ նոսա՝ յԵգիպտոսէ և յառաջ. և զանազան օրինակօք ցուցանէ զանՀրաժեշտ պատուՀասն, յորում ո՛չ ունէին գտանել մխիթարութիւն. օրինակաւ չմխիթարելոյն Եզեկիելի 'ի մեռանել կնոջն: Սպառնայ և 'ի վերայ այլազգեացն որք ոտնՀար լինէին Հրէից: Յիշէ և զառնուլն Երուսաղեմի. և դարձեալ կշտամբէ զոմանս. և ապա տայ աւետիս դարձի առ լերինսն որոց սպառնացաւ 'ի ժամ բարկութեանն: Եւ յարութեամբ ոսկերացն, և շինուածով տաճարին, և սաՀմանօք ցեղիցն, և դրամբք քաղաքին ըստ ցեղիցն՝ Հաստատէ զդարձ Հրէիցն. և զշինուած տաճարին, և զկանգնել պարսպին և դրանցն Երուսաղեմի. և 'ի նոյն նկարէ զշինութիւն եկեղեցւոյ, և զվայելչութիւն անձեռագործ վերնոյն Երուսաղեմի, և սքանչելի դրանցն. զոր ևս յայտնի ցուցանէ ՅովՀաննէս 'ի Յայտնութեանն: Եւ ունի մարգարէս պատմութիւն ժամանակի ամաց քսանից:

## Գլուխք գրոց Եզեկիելի Մարգարէի

Ա̃. Տեսիլ գազանացն ըստ նկարագրին, 'ի վերայ բանաւորաց, գազանաց անասնոց և թռչնոց. և անիւքն 'ի վերայ ժամանակի՝ զտիրելն Աստուծոյ յայտնէ. և նովաւ զվերջին գալն Քաղդէացւոցն, և զաւերն Երուսաղեմի: Իսկ ըստ մարգարէութեան՝ զմարդանալն Քրիստոսի, և զկառավարելն 'ի խաչն. և զեկեղեցւոյ յայտնէ. իսկ ըստ բարոյից՝ զչորս առաքինութիւնսն յորս Հանգչի Աստուած. ևս և վասն Հանդերձեալ գալստեանն Քրիստոսի: Ամբաստանէ Աստուած զԻսրայէլ, և ջամբեալ զմատեանն՝ կարգէ զնա դէտ 'ի վերայ Իսրայէլի:

Բ̃. 'Ի կշտամբանս անարժանիցն՝ կապանօք և լռութեամբ ճգնի մարգարէն: Դրոշմէ աղիւսովն զկործանումն Երուսաղեմի. և 'ի կողմն ննջելովն՝ չափէ զժամանակն 'ի մարգարէութենէն իւրմէ մինչև յառաջին ամն Կիւրոսի՝ քառասուն ամ. և յաւերածէ տաճարին մինչ 'ի կանգնումն պարսպացն Երուսաղեմի առ Նէէմաւ, Հարեւր և յիսուն ամ. և ճնշելով զինքն՝ գուշակէ զսով և զգերութիւն. որ և առ մեզ պաշտի դատաստանն՝ ա՛ստ և 'ի Հանդերձեալն:

Գ̃. Սպառնալով լերանցն զանվրէպ սուրն նշանակէ, և զկործանումն բագնացն. և կրկնելովն զվախճանն և զծախումն նոցա՝ 'ի սրոյ և 'ի սովոյ. և զըմբռնիլն Սեդեկիայ:

Դ̃. Համբարձեալ զմարգարէն ածէ յԵրուսաղէմ, և ցուցանէ նմա զկուռսն 'ի դրունս և յորմն տաճարին. և զի լային զԹամուզ, որ է Ադոնիսն յառասպելս. ընդ որոյ վեց տապարաւորս արձակէ 'ի կոտորել, իսկ 'ի դրոշմեալսն խորՀրդով խաչին՝ խնայել. և ցանել Հուր 'ի քաղաքին:

Ե̃. Հակառակ մարգարէանայ չարախրատիցն. որք ասէին թէ ո՛չ գերիմք՝ այլ աստ վախճանիմք իբրև 'ի կաթսա. որոց սպառնայ ցրել, և յետ փոքր ինչ դարձեալ ժողովել:

Զ̃. Գերւոյ զգեստի՛ւն և գաղտ ելանելովն՝ զփախչիլն Սեդեկիայ և զըմբռնիլն, և զկուրութեամբ ածիլն 'ի Բաբելոն նշանակէ:

Է̃. Դարձեալ իւրով կարօտութեամբն նշանակէ մարգարէն ըզլըլկանս սովոյն 'ի պաշարմանն. և թէ փութով Հասանեն նոցա չարիքն:

Ը̃. Տարագրէ յԻսրայէլէ զսուտ մարգարէսն, որք զխարխուլ ժողովուրդն իբրև զորմն ծեփէին՝ խաղաղութիւն ըղձանալով. անխծանէ և քրմուՀեացն ընդ սուտ տեսլեանցն. և զի պաՀպանական Հմայս 'ի բազուկս և 'ի գլուխս նոցա կապէին, զորս 'ի միջոյ բառնալ սպառնայ:

Թ̃. Ասէ և վասն խոտորելոցն 'ի կուռսն և 'ի մոլիսն, թէ ե՛ս Տէր թոյլ տաց ստոցն ըստ ախորժելոյ նոցա տալ պատասխանի, որպէս Սեդեկիայն Աքաաբու, և կորուսից զխաբօղսն և զխաբեալսն 'ի զգուշութիւն այլոց:

Ժ̃. Զի ո՛չ շաՀողացն ապաշխարութեամբ զփրկութիւն՝ ո՛չ կարեն օգնել արդարքն. և որ երբեմն զմի ոք խնդրէ 'ի խրամ ցանգոյն՝ զի մի՛ զյոյսն բարձցէ. այժմ զերիսն ասէ անկարս, զի մի՛ ծոյլս արասցէ: Պաշտի բանս և 'ի Հանդերձեալն դատաստան:

ԺԱ̃. Փայտիւ որթոյն զՀրկիզութիւն քաղաքին նշանակէ, որք 'ի Հրոյ յԵգիպտոսէ ելին, և 'ի Հուր Բաբելացւոցն մաշին վասն

23 Ոսկան. ԱՀաւասիկ կենդանի է: 24 Ոմանք. Երկիր պագից. զի նա: 25 Բաղարձ. Տուր ինձ իշխա՛... զվիշապդ առանց սրոյ: Ոսկան. Տուեալ է քեզ: 29 Ոմանք. Տագնապէին զնա. Հարկաւ ետ 'ի ձեռս նոցա: Ո-բ Ոսկան. Հարկիւ ետ 'ի ձե՛: 32 Օրինակ մի. Հաց 'ի կերակուր: 39 Ոմանք. Եւ եկն 'ի բերան գբ՛... և ետես զԴանիէլ զի նստէր. և աղա՛: 41 Ամենայն Գրչագիրք մեր յայս բան կատարեն զՄարգարէութիւնս Դանիէլի. պատառեցան նոյն ժամայն առաջի նորա: Ո-բ Ոսկան յաւելու Համար 42. Յայնժամ ասէ թագաւորն. Պակնուցուն ամենայն բնակիչք յընդՀանրոյ երկրի յԱստուծոյ Դանիէլի. զի նա է փրկիչ՝ արարօղ նշանաց և սքանչելեաց երկրի. որ փրկեաց զԴանիէլ 'ի գբոյ առիւծուց: